Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 11 ՀՈՒՆԻՍ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



—○—

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։
Հեռախոս՝ 2—52—78։

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԱՅԻՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԵՎ ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1946—1950 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՉՈՐՐՈՐԴ (ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԱՌԱՋԻՆ) ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի կողմից 1946 թվականի հուլիսին ընդունված՝ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թվականների հետպատերազմյան հնգամյա պլանը, Միութենական Կառավարության և անձամբ ընկեր Ստալինի ղեկավարությամբ ու օգնությամբ հաջողությամբ կատարվեց։*

### ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

*1950 թվականի երկրորդ կիսամյակում գերազանցվեց արդյունաբերական արտա-*

դրության այն մակարդակը, որը սահմանվել էր հնգամյա պլանով։

Գործող հիդրոէլեկտրակայանների կարողությունն ավելացվելու, ինչպես նաև Սևանի հիդրոէլեկտրակայանը գործարկվելու շնորհիվ էլեկտրաէներգիայի արտադրությունը 1950 թվականին, համեմատած նախապատերազմյան մակարդակի հետ, ավելացավ 2,4 անգամ և գերազանցեց հնգամյա պլանի առաջադրանքը։ Մեծ աշխատանքներ են կատարվել Գյումուշի խոշոր հիդրոէլեկտրակայանի շինարարության գծով՝ ռեսպուբլիկայի էներգետիկ բազան է՛լ ավելի ընդարձակելու համար։

Մեծ չափով զարգացան գունավոր մետալուրգիան և մեքենաշինական արդյունաբերությունը։ Կառուցվեցին և գործարկվեցին կաբելի, էլեկտրամեքենաշինական, հիդրոտուրբինների, ավտոնորոգման, ճշգրիտ էլեկտրասարքերի գործարանները և այլ ձեռնարկություններ։ Ընդարձակվել են գունավոր մետալուրգիայի գոյություն ունեցող ձեռնարկությունները և ծավալվել է լեռնահանքային կոմբինատների շինարարությունը։ Հնգամյակի տարիներին ստեղծվել է էլեկտրոլիտային պղնձի, ալյումինի, կաբելի, գեներատորների, տրանսֆորմատորների,



հիդրոտուրբինների, կոմպրեսորների, մետաղահատ դազգահների, ավտոմոբիլային և տրակտորային պահեստի մասերի, ժամացույցների, էլեկտրաչափիչ սարքերի արտադրությունը։

Քիմիական արդյունաբերության մեջ ըղ գալի զարգացում է ստացել սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, սոդայի և հանքային պարարտանյութերի արտադրությունը։

Շինանյութերի արտադրությունը գերազանցել է նախապատերազմյան մակարդակը։ Շինարարական քարի հանույթը 1950 թվականին, համեմատած 1940 թվականի հետ, ավելացավ 3,4 անգամ, կղմինդրի արտադրությունը՝ 2,1 անգամ, ցեմենտի արտադրությունը՝ 1,6 անգամ։ Կազմակերպվել է լուսամուտի ապակու արտադրությունը։ Սակայն շինարարական քարի հանույթի, կղմինդրի և լուսամուտի ապակու արտադրության ասպարեզում հնգամյա պլանի առաջադրանքը չի կատարվել։ Սկսվել է շինանյութերի նոր գործարանների կառուցումը։

Է՛լ ավելի են զարգացել թեթև արդյունաբերության ճյուղերը։ Բամբակեղեն գործվածքների արտադրությունը 1950 թվականին, համեմատած 1940 թվականի մակարդակի հետ, ավելացել է 1,3 անգամ, մե-

տաքսյա գործվածքներինը՝ 6,9 անգամ, տրիկոտաժային սպիտակեղենինը և վերնազգեստինը՝ 2,4 անգամ, գուլպեղենինը՝ 1,5 անգամ, կաշվե կոշկեղենինը՝ երկու անգամ։ Կազմակերպվել է բրդյա և մետաքսյա գործվածքների ավելի բարձր տեսակների արտադրությունը։ Կառուցվել և գործարկվել են մահուդի, գուլպայի ֆաբրիկաներ և տրիկոտաժի երկու ֆաբրիկա։ Կառուցվում են կամվոլի կոմբինատը և մետաքսագործվածքային ֆաբրիկան։

Սննդարդյունաբերության հիմնական մթերքների արտադրությունը հնգամյակի ընթացքում աճել է զգալի չափով, ընդարձակվել է սննդամթերքների ասորտիմենտը և բարելավվել է նրանց որակը։ 1950 թվականին կոնսերվի արտադրության նախապատերազմյան մակարդակը գերազանցվեց 60 տոկոսով, կենդանական յուղինը՝ 24 տոկոսով, մսինը՝ 20 տոկոսով, խաղողի գինունը՝ 11 տոկոսով։ Կառուցվել և գործարկվել են շաքարի, ապակյա տարայի գործարանները, սառցարան-կոմբինատը, ինչպես նաև սննդի ու մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության այլ օբեկտներ։ Նոր կազմակերպվել է շաքարի, մսեղեն և ձկնեղեն կոնսերվների արտադրությունը։



Տեղական արդյունաբերությունը և արհեստագործական կոոպերացիան 18 տոկոսով գերակատարել են արդյունաբերական արտադրության այն ծավալը, որը հնգամյա պլանով սահմանվել էր 1950 թվականի համար։ 1950 թվականին 1940 թվականից ավելի է արտադրվել ցինկապատ ամանեղեն՝ 5 անգամ, մահճակալներ՝ 2,9 անգամ, տրիկոտաժային սպիտակեղեն՝ 1,6 անգամ, գուլպեղեն՝ 1,9 անգամ, բամբակեղեն գործվածքներ՝ 2,9 անգամ, կոշկեղեն՝ 1,8 անգամ։ 1946—1950 թվականներին գործարկվել են տեղական արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ, այդ թվում մեքենաշինական, նորոգման-մեխանիկական, հախճապակու, յուղի ու ներկի գործարանները, կահույքի ֆաբրիկան։ Յուրացվել է գյուղատնտեսական ինվենտարի, էլեկտրալուսավորման արմատուրայի, կերոսինկաների, ապակյա ու հախճապակյա ամանեղենի և լայն սպառման այլ ապրանքների մասսայական արտադրությունը։

Հնգամյակի ընթացքում արդյունաբերության մեջ բարձրացել է բանվորների աշխատանքի արտադրողականությունը, իջել է արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը։

Պետական կապիտալ ներդրումների պլանը

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում՝ ամբողջությամբ վերցրած՝ գերակատարվել է։

## ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

Հնգամյակի տարիներին ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը հասավ նոր հզոր վերելքի։ Կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը աճել և է՛լ ավելի ամրապնդվել է։ Աճել է գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազան, բարձրացել է մեքենա-տրակտորային կայանների դերը կոլտնտեսային արտադրության մեջ։ Հնգամյակի շրջանում պատրաստվել են գյուղատնտեսական արտադրության կազմակերպիչների ու մասնագետների, հողագործության, անասնաբուծության և մեքենայացման վարպետների նոր որակյալ կադրեր։

Գերակատարվել է հնգամյա պլանի առաջադրանքը հացահատիկային կուլտուրաների բերքատվության և համախառն բերքի ասպարեզում։ 1950 թվականին հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը 53 տոկոսով ավելի բարձր էր, քան 1940 թվականին։ Հացահատիկային կուլտուրանե-



րի համախառն բերքը կոլտնտեսություններում 43 տոկոսով գերազանցեց 1940 թվականի մակարդակը, այդ թվում ցորենի արտադրությունը՝ 39 տոկոսով։

Տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունը հնգամյակի ընթացքում ավելացավ 17 տոկոսով, այդ թվում բամբակենու ցանքերինը՝ 26 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 48 տոկոսով, ծխախոտինը՝ 29 տոկոսով։

Բամբակի հումքի համախառն բերքը հնգամյակի ընթացքում ավելացավ 3,4 անգամ, ծխախոտինը՝ 2 անգամ, շաքարի ճակնդեղինը՝ 1,5 անգամ։ Բամբակենու ցանքատարածությունն ավելացնելու ասպարեզում հնգամյա պլանի առաջադրանքը կատարվեց 1948 թվականին, իսկ բերքատվության առաջադրանքը՝ 1949 թվականին։

Բանջարանոցային ու բոստանային կուլտուրաների և կարտոֆիլի ցանքատարածությունը, համեմատած 1940 թվականի հետ, ավելացավ 63 տոկոսով։ Կոլտնտեսություններում կարտոֆիլի համախառն բերքը 2,8 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։

Բազմամյա խոտաբույսերի խոտհարքի տարածությունը, համեմատած 1940 թվակա-

նի հետ, ավելացավ 2,3 անգամ, սակայն հնգամյա պլանի առաջադրանքը թերակատարվեց, որի հետևանքով կերի բազան հետ մնաց անասնաբուծության աճած պահանջներից։

Հնգամյակի տարիներին կոլտնտեսություններում խաղողի և պտղատու այգիների տարածությունն ավելացավ, բայց բազմամյա տունկերի բերքատվության առաջադրանքը չի կատարվել։

Կոլտնտեսություններում հանրային մթերատու անասունների գլխաքանակի աճման հնգամյա պլանի առաջադրանքը գերակատարվել է։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կոլտնտեսություններում 1950 թվականին նախապատերազմյանից բարձր է եղել 27 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 72 տոկոսով, խոզերինը՝ 2,2 անգամ և թռչուններինը՝ 3 անգամ։ Հնգամյակի տարիներին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում զգալի աշխատանք է կատարվել անասունների ցեղայնությունը բարելավելու ուղղությամբ։

Աճել է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։ Ռեսպուբլիկայի տրակտորային պարկի կարողությունը հնգամյակի ընթացքում բարձրացել է ավելի քան երկու



անգամ։ Մեքենա-տրակտորային կայանները 1950 թվականին կատարել են 45 տոկոսով ավելի գյուղատնտեսական աշխատանք, քան 1940 թվականին։

Մեծ աշխատանք է կատարվել գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Էլեկտրիֆիկացված կոլտնտեսությունների թիվը հնգամյակի ընթացքում ավելացել է համարյա երեք անգամ։ Մինչև 1950 թվականի վերջերը էլեկտրիֆիկացվել էր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ավելի քան երկու երրորդ մասը։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել հողագործության կուլտուրայի բարձրացման ասպարեզում։ Տրակտորային ամբողջ հերկը կատարվել է նախախոփիկ ունեցող գութաններով։ Հացահատիկային կուլտուրաների ամբողջ ցանքը կատարվում է տեսակավոր սերմերով։ Կոլտնտեսությունների ցելահողերում կատարված գարնանացան կուլտուրաների ցանքը 1950 թվականին կազմեց ամբողջ ցանքատարածության 66 տոկոսը։ Աշխատանք է ծավալվել ջրովի հողերը ոռոգման նոր սիստեմին փոխադրելու ուղղությամբ։

Իրականացվել է իրրիգացիոն մեծ շինարարություն։ Կառուցվել և գործարկվել են

Ստորին Զանգվի ջրանցքի առաջին հերթը, Կոտայքի ջրհան կայանը և մի շարք այլ ջրանցքներ։ Կառուցվել է Արփի լճի ջրավազանը։ Աշխատանքներ են ծավալվել Թալինի ջրանցքը կառուցելու, ինչպես նաև Արարատյան դաշտի ու Արաքսյան տափաստանի ճահճակալած հողերը ցամաքեցնելու և յուրացնելու ուղղությամբ։

Հնգամյակի տարիներին մեծ աշխատանք է կատարվել կոլտնտեսությունները կազմակերպորեն ու տնտեսապես է՛լ ավելի ամրապնդելու և գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումները վերացնելու ուղղությամբ, զգալիորեն ամրապնդվել է աշխատանքային կարգապահությունը և բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը կոլտնտեսություններում։

Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացան 2,9 անգամ։

## ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԵՎ ԿԱՊԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1950 թվականին երկաթուղային տրանսպորտով բեռների փոխադրումը 1,5 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։



Ռեսպուբլիկական ու տեղական նշանակություն ունեցող ավտոմոբիլային ամրածածկ ճանապարհների երկարությունը 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ 24 տոկոսով։

1950 թվականին Ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության գծով բեռների փոխադրումը համարյա երեք անգամ գերազանցեց 1940 թվականի մակարդակը։ Ավելի ևս զարգացել է ավտոբուսային հաղորդակցությունը, ավելացել է ուղևորների փոխադրումը։ Ռեսպուբլիկայի քաղաքներում կազմակերպվել է բնակչության սպասարկումը տաքսիների միջոցով։

Համարյա լիովին հեռախոսացվել են ռեսպուբլիկայի բնակավայրերը։ Ռադիոկետերի թիվը, համեմատած 1940 թվականի հետ, աճել է 66 տոկոսով։

## ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՅԱՆՔԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների թիվը 1950 թվականի վերջերին կազմեց 235

հազար մարդ և, համեմատած 1940 թվականի վերջերի հետ, աճեց 90 հազար մարդով։

Բարելավվել է ժողովրդի նյութական դրությունը, որն իր արտահայտությունը գտավ բանվորների և ծառայողների դրամական ու ռեալ աշխատավարձի աճման մեջ և ինչպես կոլտնտեսային հանրային տնտեսությունից, այնպես էլ տնամերձ ու անձնական տնտեսությունից գյուղացիների եկամուտների ավելացման մեջ։

Զգալիորեն աճել են աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկմանը հատկացված պետական ծախսերը։ Բնակչությունը պետության հաշվին ստացել է՝ նպաստներ և վճարումներ բանվորների ու ծառայողների սոցիալական ապահովագրության գծով, կենսաթոշակներ՝ սոցյալական ապահովության գծով, ձրիաբար և արտոնյալ գներով ուղեգրեր՝ սանատորիաների, հանգստյան տների և մանկական հիմնարկների համար, նպաստներ՝ բազմազավակ և միայնակ մայրերին, ձրի բժշկական օգնություն, ձրի ուսուցում և աշխատավորների որակավորման բարձրացում պետության հաշվին, թոշակներ սովորողներին և մի շարք այլ վճարումներ ու արտոնություններ։ Բոլոր բանվորներն ու ծառայողները ամեն տարի



ոչ պակաս, քան երկու շաբաթով, իսկ մի շարք պրոֆեսիաների աշխատողները ավելի երկար ժամանակով արձակուրդներ են ստացել, պահպանելով աշխատավարձը։

Հայկական ՍՍՌ աշխատավորների նյութական բարեկեցության սիստեմատիկ աճման հետ միասին, վերջին տարիներս հաջողությամբ զարգացել է հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում ու այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թիվը հնգամյակի ընթացքում ավելացել է 50 հազար մարդով և 1950 թվականին հասել 312 հազար մարդու, այդ թվում տեխնիկումներում և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 10 հազար մարդու։

Ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում 1950 թվականին սովորում էր 15 հազար ուսանող՝ 1940 թվականի 11 հազար ուսանողի դիմաց։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը հետպատերազմյան հինգ տարվա ընթացքում ստացել է 6 հազար մասնագետ՝

բարձրագույն կրթությամբ և 8 հազար մասնագետ՝ միջնակարգ կրթությամբ։

1950 թվականին գիտա-հետազոտական հաստատությունների ցանցը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 1,6 անգամ, իսկ նրանց գիտական աշխատողների թիվը աճեց 2,5 անգամ։

Քաղաքներում և գյուղական վայրերում 1950 թվականին, համեմատած 1940 թվականի հետ, ակումբների և մասսայական գրադարանների թիվը ավելացավ 46 տոկոսով, կինոսարքերի թիվը՝ ավելի քան 2 անգամ։ 1950 թվականին ռեսպուբլիկայում հրատարակված գրքերի ընդհանուր տիրաժը, համեմատած 1940 թվականի հետ, աճեց 73 տոկոսով։

Հետպատերազմյան շրջանում մեծ աշխատանք է կատարվել բնակչության բուժական և սանիտարա-պրոֆիլակտիկ սպասարկումը է՛լ ավելի բարելավելու ուղղությամբ։ Քաղաքներում և գյուղական վայրերում հիվանդանոցային մահճակալների թիվը 1950 թվականին, համեմատած 1940 թվականի հետ, ավելացավ 58 տոկոսով, իսկ բժիշկների թիվը ռեսպուբլիկայում՝ 2,5 անգամ։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել



ռեսպուբլիկայում սովետական առևտրի զարգացման գործում։ 1947—1950 թվականների ընթացքում Միութենական Կառավարությունը երեք անգամ իջեցրեց մասսայական սպառման ապրանքների գները և պայմաններ ստեղծվեցին 1951 թվականի մարտի 1-ից գների նոր իջեցում կատարելու համար։ Այդ ապահովեց բանվորների, ծառայողների և ինտելիգենցիայի ռեալ աշխատավարձի լուրջ բարձրացումը և էժանացված արդյունաբերական ապրանքներ գնելու համար գյուղացիների ծախսերի կրճատումը։ 1950 թվականին պետական և կոոպերատիվ խանութներում բնակչությանը զգալիորեն ավելի շատ ապրանք է վաճառվել, քան 1940 թվականին, մանավանդ միս ու մսեղեն, կենդանական յուղ, պանիր, շաքար, հրուշակեղեն, մակարոնեղեն, կաթնամթերք, բամբակեղեն, բրդեղեն ու մետաքսեղեն գործվածքներ, տրիկոտաժեղեն ու գուլպեղեն, կաշվե կոշկեղեն։ Աճել է նաև կուլտուրական ու տնտեսական պիտույքների վաճառքը բնակչությանը։ Համեմատած 1940 թվականի հետ, աճել է կոլտնտեսային առևտրի ծավալը։ Քարտային սիստեմը վերացվելուց և դրամական ռեֆորմ անցկացվելուց

հետո կոլտնտեսային շուկաներում իջել են մթերքների գները։

Հետպատերազմյան հնգամյակի տարիներին լայն զարգացում է ստացել բնակարանային շինարարությունը, քաղաքների, շրջանային կենտրոնների և գյուղերի բարեկարգումը։ Պետական ձեռնարկությունները, հիմնարկներն ու տեղական Սովետները, ինչպես նաև քաղաքների ու բանվորական ավանների բնակչությունը, պետական վարկի օգնությամբ, կառուցել են մեկ միլիոն 85 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Բացի դրանից, գյուղական վայրերում կառուցվել է 15 հազար բնակելի տուն։

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԱՅԻՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ



# ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍԿՍՎԵԼՈՒ 10-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԸ

10 տարի առաջ, 1941 թվականի հունիսի 22-ին, հիտլերյան Գերմանիան, ուխտադրժորեն խախտելով իր և ՍՍՌՄ միջև կնքված չհարձակվելու պակտը, հանկարծակի հարձակվեց մեր մեծ Հայրենիքի վրա։

Ֆաշիստական Գերմանիայի և Սովետական Միության միջև եկված պատերազմը անսպասելի չէր։ Դեռ 1939 թվականին, ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում տված հաշվետու զեկուցման մեջ, ընկեր Ստալինը խոսում էր աշխարհի վրա կախված սպառնալիքի մասին, մատնանշում համաշխարհային երկրորդ պատերազմի նախօրյակին ստեղծված ֆաշիզմի և ագրեսիայի երկու օջախները՝ Արևմուտքում՝ Գերմանիան, Արևելքում՝ Ճապոնիան։ Ագրեսիվ այդ պետությունները, անգլո-ամերիկյան իմպերիալիստների թողտվությամբ, նախապատրաստեցին և նյութեցին համաշխարհային երկրորդ պատերազմը՝ մարդկությանը և քաղաքակրթությունը կործանման առաջ կանգնեցնելով։

Մինչև ատամները զինված ֆաշիստական հորդաները (170 դիվիզիա), արբեցած Արևմուտքում տարած հեշտ հաղթանակներով, ներխուժեցին մեր երկրի սահմանները։ Գերմանական ֆաշիստներն իրենց նպատակ էին դրել՝ ոչնչացնել Սովետական պետությունը, բնաջնջել և կեղեքել ՍՍՌՄ ժողովուրդներին, նրանց դարձնել գերմանական կալվածատերերի և բանկիրների ստրուկները։ 1941 թվականի հուլիսի 3-ին ունեցած իր պատմական ռադիոելույթում ընկեր Ստալինը ասաց. «...խոսքը վերաբերում է սովետական պետության կյանքին ու մահվանը, ՍՍՌՄ ժողովուրդների կյանքին ու մահվանը, այն բանին, թե Սովետական Միության ժողովուրդներն ազա՞տ պետք է լինեն, թե՞ ընկնեն ստրկության մեջ»։

Գերմանական բանակները ժամանակակից պատերազմի լուրջ փորձ ունեին արդեն, նրանց կողմում էին սատելիտների բանակները։ Հիտլերի ռազմական մեքենայի համար էր աշխատում նաև գերմանական ֆաշիզմի կողմից ստրկացված երկրների ամբողջ արդյունաբերությունը։

Մեր ժողովուրդը այդ ամենածանր փորձությանը դիմավորեց խիզախաբար՝ իր արդար գործի, սովետական պետության հզո-



րության, բոլշևիկյան պարտիայի, մեծ առաջնորդ հարազատ ընկեր Ստալինի նկատմամբ տածած անհուն հավատով։

Մեր Հայրենիքի վրա ուխտադրժորեն հարձակված թշնամուն հակահարված տալու նպատակով ՍՍՌՄ ժողովուրդների բոլոր ուժերը մոբիլիզացնելու համար, 1941 թվականի հուլիսին ստեղծվեց Պաշտպանության Պետական Կոմիտե։ Պաշտպանության Պետական Կոմիտեն ամբողջ ժողովրդին կոչ արեց՝ համախմբվել Լենինի-Ստալինի պարտիայի շուրջը, Սովետական կառավարության շուրջը՝ Սովետական Բանակին անձնվիրաբար օգնելու թշնամուն ջախջախելու և հաղթանակը կռփելու համար։

Մեր ամբողջ երկիրը մեծ Ստալինի կոչով վերածվեց միասնական, մարտական ճամբարի։ Սովետական Բանակը, չնայած իր կրած զոհերին ու կորուստներին, պատերազմի առաջին իսկ օրերից ակտիվ պաշտպանողական մարտեր էր մղում՝ արյունաքամ անելով ֆաշիստական բանակին, նախապատրաստելով իր հարձակումը։ 1941 թվականի հունիսի 22-ը դարձավ թշնամու դեմ մեր ժողովրդի անձնուրաց, հերոսական պայքարի սկիզբը։ Այդ օրը պատմության մեջ մտավ որպես շրջադարձային կետ հա-

մաշխարհային ամբողջ երկրորդ պատերազ-
մում, որովհետև ֆաշիստական Գերմանիա-
յի ընդհարումը հզոր Սովետական Միության
հետ՝ նշանակում էր հիտլերյան բանակի վե-
րահաս կատաստրոֆը, գերմանական ֆա-
շիզմի կործանումը։

Պատերազմի առաջին օրվանից մեր ամ-
բողջ խաղաղ աշխատանքը վերակառուց-
վեց ռազմական ձևով։

1941 թվականի հուլիսի 3-ի իր ռադիոե-
լույթում ընկեր Ստալինն ասաց. «Ֆաշիս-
տական Գերմանիայի դեմ մղվող պատե-
րազմը չի կարելի սովորական պատերազմ
համարել։ Դա միայն երկու բանակների մի-
ջև մղվող պատերազմ չէ։ Դա միաժամանակ
ամբողջ սովետական ժողովրդի մեծ պատե-
րազմն է գերմանա-ֆաշիստական զորքերի
դեմ։ Ֆաշիստական կեղեքիչների դեմ մղ-
վող այս համաժողովրդական Հայրենական
պատերազմի նպատակն է ո՛չ միայն վերաց-
նել մեր երկրի վրա կախված վտանգը, այլև
օգնել Եվրոպայի բոլոր ժողովուրդներին,
որոնք հեծում են գերմանական լծի տակ»։

Սովետական Միության ժողովուրդների և
նրա հերոսական բանակի առջև ընկեր
Ստալինը խնդիր դրեց՝ պաշտպանել սովե-
տական հողի ամեն մի թիզը, ոչնչացնել հիտ-



լերյան պետությունը, նրա ղեկավարներին,
Եվրոպայում «նոր կարգ» մտցնողներին։

Ընկեր Ստալինի կոչով «Ամեն ինչ ռազմա-
ճակատի համար, ամեն ինչ հաղթանակի
համար» լոզունգը տոգորեց մեր բազմամի-
լիոն և բազմազգ ժողովրդի ամբողջ կյան-
քը։ Գերմանական ագրեսորների դեմ Սովե-
տական Միության պատերազմի մեջ մտնելն
ուժեղացրեց համաշխարհային երկրորդ պա-
տերազմի հակաֆաշիստական, ազատագրա-
կան բնույթը։

Սովետական Բանակն իր վրա ընդունեց
հիտլերյան բանակի հիմնական ուժերի դեմ
մղվող պայքարի ամբողջ ծանրությունը և
մեն-մենակ վճռական պարտություններ
հասցրեց ֆաշիստական հորդաներին, նրանց
հյուծելով ու ոչնչացնելով այնպիսի վարպետ,
կործանիչ հարվածներով, որոնք մահացու ե-
ղան հիտլերյան Գերմանիայի և նրա ռազ-
մական մեքենայի համար։

Ֆաշիստական հրոսակախմբերի անպար-
տելիության առասպելը հօդս ցնդեցվեց ար-
դեն 1941 թվականի ձմռանը, երբ Մոսկվայի
տակ նրանց ծանր կորուստներ հասցվեցին
կենդանի ուժի և տեխնիկայի ասպարեզում։

Արդեն այն ժամանակ Սովետական Բանակն ապացուցեց, որ ինքը կարող է ոչ միայն պաշտպանվել, այլև վճռական հարձակման անցնել՝ թշնամուն ոչնչացնելու համար։

Ստալինգրադի տակ մղված ճակատամարտը վերջացավ գերմանա-ֆաշիստական 300 հազարանոց բանակի ջախջախումով. ջարդվեց գերմանական ռազմական մեքենայի ողնաշարը։

Ընկեր Ստալինի բնորոշումով Ստալինգրադը դարձավ գերմանա-ֆաշիստական բանակի մայրամուտը. ստալինգրադյան ջարդից հետո Գերմանիան այլևս չկարողացավ ուշքի գալ։

Իսկ 1943 թվականի ամռանը Սովետական Բանակը իրար հաջորդող մի շարք հարվածներով գերմանա-ֆաշիստական զորքերին հետ շպրտեց Դնեպրից այն կողմը։ Կուրսկի մոտ մղված ճակատամարտը ֆաշիստական Գերմանիային կանգնեցրեց կատաստրոֆի առաջ։

Ամբողջ պատերազմի ընթացքում իրենց դաշնակցային պարտավորությունները շատ վատ էին կատարում Ամերիկայի Միացյալ Նահանգները և Անգլիան։ ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Անգլիայի միջև կնքված պայմանագրի համաձայն վերջին երկու պետություն-



ները 1942 թվականին պետք է բաց անեին երկրորդ ճակատը՝ իրենց զորքերը ափ հանելով Եվրոպայի մայր ցամաքում։ Սակայն նրանք երկրորդ ճակատի բացումը ձգձգեցին մինչև 1944 թվականը՝ այսինքը մինչև այն մոմենտը, երբ հիտլերյան Գերմանիան արդեն արյունաքամ էր եղել Սովետական Բանակի հարվածներից։

Այն ծանր ժամանակաշրջանում, երբ վճռվում էր Եվրոպայի ժողովուրդների բախտը, Անգլիայի և ԱՄՆ-ի կառավարությունները անդրկուլիսային բանակցություններ էին վարում հիտլերյան ղեկավարների, գերմանական խոշոր մագնատների հետ այն բացահայտ նպատակով, որպեսզի պահպանեին գերմանական ռազմական արդյունաբերության պոտենցիալ ուժը՝ դեռ այն ժամանակվանից ամերիկյան և անգլիական կառավարությունների կողմից նախապատրաստվող համաշխարհային նոր, երրորդ պատերազմի համար։

Ֆաշիզմի և բարբարոսության ուժերի դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական Մեծ պատերազմն ավարտվեց մեր երկրի փայլուն հաղթանակով։

Հայ ժողովուրդը, ինչպես և Սովետա-

կան Միության բոլոր եղբայրական ժողովուրդները, առաջին իսկ օրից ամենաակտիվ մասնակցություն ունեցավ Հայրենական Մեծ պատերազմում։ Բավական է ասել, որ Հայրենական պատերազմի ժամանակ հայ ժողովրդի քաջարի զավակներից ավելի քան 100 մարդու շնորհվեց Սովետական Միության Հերոսի կոչում, տասնյակ հազարավոր հայ ռազմիկներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ Հայ ժողովրդի զավակները, ռուս ժողովրդի և սովետական մյուս ժողովուրդների զավակների հետ ուս-ուսի տված, քաջության, արիության և կայունության անզուգական օրինակներ էին հանդես բերում հիտլերյան զավթիչների դեմ մղվող մարտերում, փառքով պսակելով իրենց անունները։

Մեր հերոսական բանակը ոչ միայն պաշտպանեց իր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, այլև ամբողջ մարդկությանը փրկեց ֆաշիստական ստրկացումից, փրկեց ամբողջ աշխարհի քաղաքակրթությունը։ Այս է մեր բանակի համաշխարհային-պատմական ծառայությունը, որի վրա չեն կարող ստվեր նետել միջազգային ռեակ-



ցիայի գործակալները՝ իրենց ստոր խարդախություններով։

Սովետական Բանակի պատմական հաղթանակը ամբողջ աշխարհին ակնառու կերպով ցույց տվեց սովետական հասարակարգի, սովետական պետական կարգի, սովետական Զինված Ուժերի հզորությունն ու գերազանցությունը։ Պատմության մեջ նմանը չունեցող այդ պատերազմում ՍՍՌՄ-ը հաղթանակ տարավ, որովհետև մեր երկրում հաղթել է սոցիալիստական կարգը, ստեղծվել է մի պետություն, որը ազգերի ազատ և իրավահավասար համագործակցության օրինակ է հանդիսանում։

Ֆաշիստական Գերմանիայի դեմ մղված պատերազմում ռուսների, բելոռուսների, ուկրաինացիների, ղազախների, վրացիների, կիրգիզների, հայերի, ադրբեջանցիների և բազմաթիվ մյուս ազգերի ունեցած ամենաակտիվ մասնակցության մեջ, սոցիալիստական Հայրենիքին նվիրված լինելու և այն ամեն մի թշնամու ոտնձգությունից կրծքով պաշտպանելու նրանց պատրաստակամության մեջ արտահայտվեց Լենինի—Ստալինի պարտիայի ազգային իմաստուն քաղաքականության կենսունակությունը։

Բազմազգ սովետական պետությունը հա-

ջողությամբ բունեց քննությունը, պատերազմի ժամանակ է՛լ ավելի ամրապնդվեց և ցույց տվեց իր պետական կարգի լիակատար կենսունակությունը, որովհետև «...մեր բազմազգ պետությունը աճել է ո՛չ թե բուրժուական հիման վրա, որը խթանում է ազգային անվստահության և ազգային թշնամանքի զգացմունքներ, այլ սովետական հիման վրա, որն, ընդհակառակը, բարեկամության և եղբայրական համագործակցության զգացմունքներ է արմատավորում մեր պետության ժողովուրդների միջև» (Ստալին)։

Սովետական Միության և նրա Զինված Ուժերի հաղթանակը՝ դա ստալինյան զորավարական հանճարի, ստալինյան ստրատեգիայի հաղթանակն էր, բոլշևիկյան ռազմական արվեստի հաղթանակը։ Մեր հաղթանակը՝ լենինիզմի հաղթանակն էր, Լենինի-Ստալինի պարտիայի գաղափարների հաղթանակը։ Պարտիան ոգեշնչեց և կազմակերպեց ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդներին՝ ատելի թշնամուն ջախջախելու համար։ Կոմունիստական պարտիան կարողացավ ճիշտ օգտագործել նախապատերազմյան և պատերազմի ժամանակ սովետական պետության ստեղծած նյութական հնարավորությունները, որպեսզի ծավալեր ռազմական արտադրու-



թյունը և Սովետական Բանակին անհրաժեշտ սպառազինություն մատակարարեր։ Այդ բանը մենք տեսանք հենց պատերազմի ժամանակ Սովետական Միության հզորության աճման օրինակով, երբ մեր սպառազինությունն իր որակով ոչ միայն չէր զիջում գերմանականին, այլև գերազանցում էր նրանից։ Պատերազմի վերջին երեք տարում մեր արդյունաբերությունը տարեկան միջին հաշվով արտադրում էր. 30 հազար տանկ և ինքնագնաց զրահամեքենա, մինչև 40 հազար ինքնաթիռ, մինչև 120 հազար ամեն տրամաչափի հրանոթ, մինչև 450 հազար գնդացիր, ավելի քան 3 միլիոն հրացան, 2 միլիոն ավտոմատ և այլն։

Սովետական Միությունը , որը վճռական դեր խաղաց գերմանական ֆաշիզմի ջախջախման գործում, կատարեց իր համաշխարհային ազատագրական միսիան և այժմ ընթանում է ժողովուրդների պայքարի ավանգարդում՝ հանուն խաղաղության և անվտանգության ամբողջ աշխարհում։

Սովետական Միությունը պատերազմից դուրս եկավ է՛լ ավելի ամուր։ Նոր հզոր թափ ստացավ երկրի էկոնոմիկան։ Արագորեն բուժվեցին պատերազմի վերքերը, վերականգնվեց օկուպացված շրջանների տնտե-

սութլունը և սկսվեց մեր Հայրենիքի սոցիալիստական էկոնոմիկայի հետագա զարգացման բուռն աճը։

Հայրենական Մեծ պատերազմից հետո ընկեր Ստալինը սովետական ժողովրդի առաջ խնդիր դրեց՝ կազմակերպել ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք, որը հնարավորություն կտա մեր արդյունաբերության մակարդակը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ բարձրացնելու, օրինակ, երեք անգամ։ Այդ հոյակապ խնդրի կենսագործմամբ մեր Հայրենիքը ապահովված կլինի ամեն տեսակ պատահականություններից։

Սովետական ժողովուրդը պատվով է կատարում ընկեր Ստալինի առաջադրանքը։ Դրա փայլուն ապացույցն է հետպատերազմյան առաջին հնգամյա պլանի հաջող կատարումը։ Սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիզմի այնպիսի կառուցումների շինարարությանը, ինչպիսիք են՝ Կույբիշևի, Ստալինգրադի և Կախովկայի հիդրոէլեկտրակայանները, Գլխավոր-Թուրքմենական, Հյուսիս—Ղրիմյան, Հարավ—Ուկրաինական ջրանցքները, Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքը և այլն։



Սովետական ժողովուրդը բարեկամության և եղբայրության ձեռք է մեկնել բոլոր խաղաղասեր ժողովուրդներին, այդ թվում և Գերմանիայի աշխատավոր ժողովրդին, պատրաստ նրանց ամեն տեսակի օգնություն ցույց տալու խաղաղ զարգացման ու բարգավաճման համար։

Սովետական Միությունն առաջինը ողջունեց Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ստեղծվելը, դրանով իսկ ցույց տալով պետությունների անկախության և ինքնուրույնության սկզբունքը պահպանելու և պաշտպանելու իր անխախտ ձգտումը։

Մեր հզոր Հայրենիքը ուղեցույց աստղ է ժողովրդական դեմոկրատիայի երկրների համար, որոնք սովետական ժողովրդի հետ ուս-ուսի տված, քայլում են խաղաղության կողմնակիցների լագերի շարքերում, լագեր, որի ավանգարդն է խաղաղության մեծ դրոշակակիր, ամբողջ աշխարհի աշխատավորների հույս ու ապավեն Սովետական Միությունը։

Սովետական ժողովուրդը իր ուժը և հաղթանակի կամքը ցույց տվեց ֆաշիստական

զավթիչների դեմ մղված պայքարում։ Նա էր ավելի կամրապնդի և կփառաբանի իր Հայրենիքը՝ սոցիալիստական խաղաղ շինարարության տարիներին։ Նոր պատերազմի նոր հրձիգները՝ ամերիկա-անգլիական իմպերիալիստները, որոնք ստանձնել են հիտլերյան ֆաշիստների դերը և քարոզում են ռասսայականության թեորիան ու համաշխարհային տիրապետության ցնորամիտ գաղափարները, որոնք ընթանում են պարտությունների ու կատաստրոֆների նույն այն ճանապարհով, որով ընթանում էին հիտլերականները, թող աչքի առաջ ունենան անցած պատերազմի դասերը և սովետական պետության, ինչպես նաև երկրագնդի բոլոր խաղաղասեր ժողովուրդների հարաճուն հզորությունը։

Ամերիկա-անգլիական իմպերիալիստները տենդորեն պատերազմի են պատրաստվում։ Նրանք ռազմական բազաներ են ստեղծում աշխարհի զանազան մասերում, միջամտում են ուրիշ պետությունների ներքին գործերին, ինչպես այդ անում են Արևմտյան Գերմանիայում, թնդանոթի միս սպանդ դարձնելով այն։ Նրանք վերականգնում են Արևմտյան Գերմանիայի ռազմական արդյունաբերու-



թյունը, ստեղծում են նախկին հիտլերականներից կազմված զորամասեր՝ լայնորեն օգտագործելով նախկին հիտլերյան սպաներին ու գեներալներին։ Սակայն Գերմանիայի աշխատավոր ժողովուրդը թույլ չի տա, որ նորից ստրկացնեն իրեն։ Ընկեր Ստալինը նշել է, որ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ստեղծումը խաղաղասեր Սովետական Միության կողքին, բացառում է պատերազմների հնարավորությունը Եվրոպայում՝ երկար տարիների ընթացքում։

Ամերիկա-անգլիական իմպերիալիստները այժմ հանցավոր պատերազմ են մղում ազատասեր, հերոսական կորեական ժողովրդի դեմ, որն անձնվիրաբար պաշտպանում է իր անկախությունն ու ազգային գոյությունը։ Կորեան զավթելու և ստրկացնելու նրանց պլանները լիակատար պարտություն կրեցին, իսկ այս նշանակում է, որ պարտություն կրեց իմպերիալիստական պետությունների գաղութային, թալանչիական քաղաքականության ամբողջ սիստեմը։

Պարզ է, որ ամերիկա-անգլիական իմպերիալիստներին, որոնք բորբոքում են համաշխարհային նոր պատերազմի հրդեհը և ձգտում են ստրկացնել աշխարհի խաղաղա-

սեր ժողովուրդներին, նպաստում է նույն օգ-բալի և անփառունակ ճակատագիրը, որին արժանացավ հիտլերյան Գերմանիան։

Խաղաղության համար աշխարհի ժողովուրդների ծավալած հզոր շարժումը նորելուկ ֆաշիստներին՝ ամերիկա-անգլիական հրձիգներին թույլ չի տա արյունալի նոր սպանդ փաթաթել ժողովուրդների վզին։ Դրա երաշխիքն են խաղաղության կողմնակիցների 800 միլիոնանոց բանակը և Սովետական Միությունը, որը գլխավորում է խաղաղության հաղթանակի գործը ամբողջ աշխարհում։

Լենինի-Ստալինի պարտիայի փորձված և փառապանծ դրոշի ներքո, իր մեծ առաջնորդ, սիրելի ուսուցիչ և հայր ընկեր Ստալինի առաջնորդությամբ մեր ժողովուրդը, վստահ իր ուժերի վրա, ընթանում է դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը։

—⊙—



# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՈՒՂՈՒ ՎՐԱ

Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի երկրները, մինչև Սովետական Բանակի կողմից նրանց ազատագրումը և ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաստատումը, գտնվում էին տնտեսական և կուլտուրական խղճուկ դրության մեջ։ Այդ երկրների կյանքը և զարգացումն ընթանում էին ոչ թե նրանց ազգային շահերին համապատասխան, այլ այնպես, ինչպես ձեռնտու էր Գերմանիայի, ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի իմպերիալիստական գիշատիչ շրջաններին, ինչպես նաև սեփական կապիտալիստների և կալվածատերերի շահերին։ Համարյա այդ բոլոր երկրները ագրարային կամ կիսաագրարային էին։

Իշխանության անցումը աշխատավորության ձեռքը և ժողովրդա-դեմոկրատական

կարգերի հաստատումն այդ երկրների համար ստեղծեցին զարգացման պայծառ հեռանկարներ։ Ժողովրդական ամենալայն մասսաները, որոնք առաջ գտնվում էին կապիտալիստների և կալվածատերերի լծի տակ, լայն հնարավորություն ստացան իրենց ստեղծագործական ուժերը հանդես բերելու համար։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում կատարվող սոցիալիստական հաջող շինարարությունը արագ կերպով փոխում է նրանց դեմքը. նրանք ընթանում են սոցիալիստական ինդուստրիալիզացիայի, ամբողջ ժողովրդական տնտեսության անշեղ վերելքի, աշխատավորների կենսամակարդակի անընդհատ բարձրացման ուղիով։ Միայն 1950 թվականին, ժողովրդական դեմոկրատիայի երկրները՝ Լեհաստանը, Հունգարիան, Ռումինիան, Բուլղարիան, Ալբանիան իրենց արդյունաբերական արտադրությունը բարձրացրին ավելի շատ, քան այդ տեղի էր ունենում կապիտալիզմի օրոք ամբողջ տասնամյակի ընթացքում և խոշոր չափով առաջ ընթացան սոցիալիզմի հիմքերի կառուցման ճանապարհին։

Ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրները անցյալ տարի գերակատարեցին իրենց պլանները։ Զգալի չափերով աճեցին նրանց ազգային եկամուտները։



Այդ ամենը հնարավոր դարձավ շնորհիվ ժողովրդական տնտեսության սոցիալիստական պլանավորման ուժեղացման, աշխատավորների ստեղծագործական ակտիվության, շնորհիվ Սովետական Միության հըսկայական, անգնահատելի, անշահախնդիր օգնության, ինչպես նաև իրենց՝ ժողովրդական դեմոկրատիայի երկրների փոխադարձ համագործակցության։

Եվ այսպես, այն ժամանակ, երբ անգլոամերիկյան ագրեսիվ բլոկի մեջ ընդգրկված կապիտալիստական երկրների ամբողջ էկոնոմիկան ի սպաս է դրված նոր պատերազմի նախապատրաստության գործին, երբ այդ երկրներում գնալով աճում է գործազուրկների բանակը, երբ տասնյակ միլիոնավոր մարդիկ դատապարտված են քաղցի ու բնաջնջման, սոցիալիզմի ուղին թևակոխած ժողովրդական դեմոկրատիայի երկրները, Սովետական Մեծ Միության եղբայրական օգնությամբ, ընթանում են ազգային բարգավաճման վերելքի ուղիով։

Համառոտակի նշենք ժողովրդական դեմոկրատիայի մի քանի երկրների՝ ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման բնագավառում ձեռք բերած նվաճումները, նրանց զարգացման մոտակա հեռանկարները։

## ԼԵՀԱՍՏԱՆ

Երկրորդ տարին է, ինչ Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկան հաջողությամբ կենսագործում է իր ժողովրդական տնտեսության զարգացման վեցամյա պլանը (1950—1955 թ.թ.)։ Այդ պլանի գլխավոր խնդիրն է՝ Լեհաստանում կառուցել սոցիալիզմի հիմքերը։

Վեցամյա պլանի համաձայն առանձնապես մեծ տեմպերով է զարգանում արդյունաբերությունը։ Այդ տեմպերի շնորհիվ արդյունաբերությունը 1955 թվականին 85—90 տոկոսով ավելի արտադրանք կտա, քան 1949 թվականին, որի հետևանքով համախառն արտադրանքը, նախապատերազմյան ժամանակաշրջանի հետ համեմատած, կավելանա ավելի քան 3 անգամ, իսկ յուրաքանչյուր շնչին հասանելիք արտադրանքը կավելանա ավելի քան չորս անգամ։



Առանձնապես մեծ ուշադրություն է դարձվում պողպատի արտադրության ավելացմանը։ Լայնացվում են եղած գործարանները և կառուցվում նորերը։ Կրակովի մոտ կառուցվող խոշոր մետաղամշակման գործարանը, օրինակ, տարեկան կտա այնքան մետաղ, ինչքան մինչև պատերազմը արտադրում էր Լեհաստանի ամբողջ մետալուրգիական արդյունաբերությունը։ Այդ գործարանի սարքավորումներն ուղարկում է Սովետական Միությունը։

Մեծ չափերով ծավալվում է գազգահների արտադրությունը, որը նախապատերազմյան ժամանակաշրջանի հետ համեմատած կավելանա համարյա 20 անգամ։ Հնգամյակի վերջում, 1949 թվականի հետ համեմատած, մոտ 3 անգամ կավելանա քիմիական արդյունաբերության արտադրանքը։

Վեցամյա պլանի համաձայն հատուկ ուշադրություն է դարձվում արդյունաբերության այն ճյուղերի վրա, որոնք որոշող նշանակություն ունեն երկրի գյուղատնտեսության զարգացման համար։ Այսպես օրինակ, ազոտային պարարտանյութերի արտադրությունը կավելանա 3,5 անգամ, ավելի արագ կերպով է աճում ֆոսֆորային պա-

րարտանյութերի արտադրությունը։ 1955 թվականին արտադրվելու է 10—12 հազար տրակտոր, (5—6 անգամ ավելի, քան 1949 թ.), մոտ 15 հազար բեռնատար և մոտ 10 հազար մարդատար ավտոմեքենա։

Արդյունաբերության զարգացման համար հիմք է հանդիսանալու նոր ստեղծվող խոշոր էներգետիկ բազան. Էլեկտրաէներգիայի արտադրությունը, 1949 թվականի համեմատությամբ, վեցամյակի վերջում կաճի ավելի քան երկու անգամ։

Միաժամանակ ուժեղ զարկ է տրվում լայն սպառման ապրանքների արտադրությանը։ Վեցամյակի վերջում, 1949 թվականի համեմատությամբ, բամբակեղեն գործվածքների արտադրությունը կավելանա 50 տոկոսով, բրդեղեն գործվածքներինը՝ 30 տոկոսով, վուշեղեն գործվածքներինը երկու անգամ և այլն։

Վեցամյա պլանով նախատեսված է կառուցել 350 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։

Վեց տարվա ընթացքում գյուղատնտեսության արտադրությունը կավելանա 35—45 տոկոսով։ Գյուղատնտեսությունը կստանա 50—60 հազար տրակտոր և մեծ քանակու-



թյամբ ավտոմեքենաներ։ Էլեկտրիֆիկացվելու է 8—10 հազար գյուղ։

Առանձնապես մեծ տեմպերով է ընթանում Լեհաստանի մայրաքաղաք Վարշավայի վերակառուցումը, գնալով ավելի ու ավելի են անհետանում ավերիչ պատերազմի հետքերը, կառուցվում են բազմաթիվ գեղեցիկ շենքեր, բացվում են նոր պողոտաներ ու հրապարակներ։

1950—1955 թվականների ընթացքում ըղձալի չափով բարձրանալու է աշխատավորների բարեկեցությունը, կուլտուրական մակարդակը։ Նախապատերազմյան ժամանակաշրջանի հետ համեմատած աշխատավորների միջին կենսամակարդակը կբարձրանա մոտ երկու անգամ։ Վեցամյակի ընթացքում պետք է վերաորակավորվի 800—900 հազար բանվոր, պատրաստվի 80—100 հազար տեխնիկ և մոտ 24 հազար ինժեներ։

## ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱ

Իր ժողովրդական տնտեսության զարգացման երկամյա պլանի հաջող կենսագործումից հետո 1949 թվականի հունվարի մեկից չեխոսլովակյան դեմոկրատական ռեսպուբլիկան ձեռնարկեց հնգամյա պլանի (1949—1953 թ. թ.) կատարմանը։ Հնգամյա պլանի

կատարումով 1953 թվականին երկրի ազգային եկամուտը, 1948 թվականի համեմատությամբ, կաճի 50 տոկոսով, արդյունաբերական արտադրանքը կավելանա 57 տոկոսով, արտադրության միջոցների արտադրությունը՝ 66 տոկոսով, սպառման առարկաների արտադրությունը՝ 50 տոկոսով։ Գյուղատնտեսության արտադրանքը կաճի 15 տոկոսով։ Ազգաբնակչության յուրաքանչյուր շընչին հասնող սպառումը կավելանա 35 տոկոսով։

Դեռևս գոյություն ունեցող կապիտալիստական տարրերը աստիճանաբար սահմանափակվելու են և դուրս են մղվելու ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներից։

Հնգամյա պլանի համաձայն Չեխոսլովակիայում առանձնապես արագ տեմպերով է զարգանում ծանր արդյունաբերությունը, հատկապես ծանր մեքենաշինությունը։ 1948 թվականի համեմատությամբ հնգամյակի վերջին տարում մետաղամշակման արդյունաբերությունը կտա համարյա երկու անգամ ավելի արտադրանք։ Կառուցվելու են ծանր մեքենաշինության 8—10 գործարան,



ավտոմոբիլի գործարան, գնդակավոր առանցքակալների գործարան և այլն։

Հնգամյակի ընթացքում գյուղատնտեսության մեջ առանձնապես մեծ զարգացում կստանա անասնաբուծությունը։ Մեծ չափերով կմեքենայացվեն գյուղատնտեսական աշխատանքները։ Հնգամյակի վերջում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ աշխատելու են 45 հազար տրակտոր։

Հնգամյա պլանի համաձայն Չեխոսլովակիայի ժողովրդական տնտեսությունն արագ թափով զարգանում է։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի պլանը կատարվեց 101, 8 տոկոսով։

Երկրի բարգավաճման, սոցիալիստական վերակառուցման գործին մեծ օգնություն է ցույց տալիս Սովետական Միությունը։ Ինչպես այս տարվա սկզբին հայտարարեց Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիայի նախագահ Կլեմենտ Գոտվալդը, Չեխոսլովակիան մեծ հնարավորություններ ունի իր հնգամյա պլանը, նրա նախնական թվերով, կատարելու ժամկետից շուտ։

## ՌՈՒՄԻՆԻԱ

Այս տարի իր ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի (1951—1955 թ. թ.) կենսագործմանը ձեռնարկեց Ռումինական Ժողովրդական ռեսպուբլիկան։ Այդ պլանի կենսագործումը ռեսպուբլիկային հնարավորություն կտա վերջնականապես լիկվիդացնել կապիտալիստական էլեմենտները արդյունաբերության մեջ, սահմանափակել նրանց գործունեությունը առևտրի բնագավառում և գյուղատնտեսության մեջ, կառուցել նոր հասարակարգի հիմքերը, ուր չկան շահագործողներ և շահագործվողներ։

Հնգամյա պլանի հիմքն է հանդիսանում երկրի սոցիալիստական ինդուստրացումը։ Հնգամյակի վերջում Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան կդառնա զարգացած սոցիալիստական արդյունաբերության և մեծ մասամբ մեքենայացված գյուղատնտեսություն ունեցող երկիր։ Աշխատավորների կենսամակարդակը անընդհատ կաճի. 1955 թվականին այն 80 տոկոսով կգերազանցի 1950 թվականի մակարդակը։

Հնգամյակի վերջին տարում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր արժեքը,



1950 թվականի համեմատությամբ, կկազմի 244 տոկոս։ 1955 թվականին Ռումինիայի արդյունաբերությունը կարտադրի 8 միլիոն 533 հազար տոննա ածուխ, 10 միլիոն տոննա նավթ, 800 հազար տոննա չուգուն, 1 միլիոն 252 հազար տոննա պողպատ, 828 հազար տոննա գլանվածք, 5.000 տրակտոր, 5.200 ապրանքատար վագոն և այլն։ Կարտադրվի չորս անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Ռումինիայի էլեկտրիֆիկացման պլանը կազմված է 10 տարվա համար։ Այդ ժամանակվա ընթացքում կառուցվելու է 13 ջերմային և 24 հիդրոէլեկտրակայան, մեծացվելու են գործող կայանների հզորությունները։ Դրանցից ամենախոշոր հիդրոէլեկտրակայանը, որը կառուցվում է Բիստրիցե գետի վրա և որին շնորհված է Վ. Ի. Լենինի անունը, տարեկան արտադրելու է 430 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Այժմ լայն թափով առաջ են գնում այդ կայանի շինարարական աշխատանքները։

Հնգամյա պլանով նախատեսված բազմաթիվ նոր արդյունաբերական ձեռնարկությունների շինարարությունն արդեն սկսվել է։ Ռումինիայի ամենախոշոր նորակառույց-

ներից է Դանուբ—Սև ծով ջրանցքը։ Դանուբ գետը Սև ծովի հետ միացնող այդ խոշոր ջրանցքը հինգ անգամ կկրճատի գետի ու ծովի միջև ընկած ջրային ճանապարհը, ոռոգելի կդարձնի և կենդանություն կտա Դոբրուջի պապակ հողերին, ջուր կտա բրնձի և բամբակի դաշտերին, ամբողջովին կփոխի երկրի այդ մասի տեսքը։

Ինդուստրացման հիման վրա սոցիալիստական շինարարությունը լայնորեն կծավալվի նաև Ռումինական գյուղում։ Հնգամյակի վերջում երկրի գյուղատնտեսության մեջ առաջատար դեր կխաղա սոցիալիստական սեկտորը։ Արդեն այժմ տասնյակ հազարավոր գյուղացիական տնտեսություններ միավորվել են կոլեկտիվ տնտեսությունների մեջ։ Այսպես, եթե 1950 թվականի մարտին երկրում կար ընդամենը 184 կոլեկտիվ տնտեսություն, ապա հոկտեմբեր ամսին այդ տնտեսությունների թիվը հասավ 1006-ի։ Այժմ Ռումինիայում կոլեկտիվ տնտեսություններում ընդգրկված է մոտ 66 հազար չքավոր և միջակ գյուղական ընտանիք, որոնք մշակում են մոտ 268 հազար հեկտար հող։ Կառավարությունը վարկեր, գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ տրամադրելու և այլ արտոնու-



թյունների միջոցով ամեն կերպ օգնում է գյուղատնտեսության սոցիալիստական սեկտորի զարգացմանը։ Կազմակերպված են 138 մեքենատրակտորային կայաններ, որոնք ունեն 6.100 տրակտոր։ Հնգամյակի ընթացքում նախատեսված է էլեկտրիֆիկացնել 2.000 գյուղ։

Նախկին Ռումինիայում կար ավելի քան չորս միլիոն կիսագրագետ և անգրագետ։ Այժմ ամբողջ երկրում բազմաթիվ դպրոցներ են բացված մեծահասակների համար, մտցված է ձրի ուսուցում 7-ամյա դպրոցներում, գործում են համալսարաններ և ինստիտուտներ։ Վերակառուցված է Գիտությունների Ակադեմիան, որն այժմ ակտիվորեն օգնում է երկրում ծավալված շինարարությանը։ Կուլտուրայի մեծ օջախներից է հանդիսանում Բուխարեստում կառուցվող երկրի խոշորագույն տպագրական կոմբինատը, որտեղ տեղավորվելու է «Սկինտեա» թերթի խմբագրությունը և տպագրվելու են թերթեր ու գրքեր։ Դա փաստորեն կուլտուրայի մի շքեղ պալատ է։ Կոմբինատի կենտրոնական սրահում արդեն դրված է Սովետական Միությունից ստացված տպագրական ռոտացիոն նորագույն մեքենան։

## ՀՈՒՆԳԱՐԻԱ

Երկրորդ տարին է, ինչ իր ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանը հաջողությամբ կենսագործում է նաև Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Այդ պլանը պետք է լուծի հետևյալ հիմնական խնդիրները. արդյունաբերության, առաջին հերթին մետաղամշակման և մեքենաշինության արագ զարգացում. տրանսպորտի մեքենայացում և մոդերնիզացում. գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցում։ Այսպիսով, Հունգարիան ագրարային-ինդուստրիալ երկրից կվերածվի ինդուստրիալ-ագրարային երկրի և միևնույն ժամանակ կունենա սոցիալիստական զարգացած գյուղատնտեսություն։

Այն ժամանակ, երբ Խորտիի ռեժիմի օրոք Հունգարիայի ազգային եկամուտը տարեկան աճում էր ընդամենը 1,9 տոկոսով, Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ազգային եկամուտը հինգ տարվա ընթացքում կաճի ավելի քան 63 տոկոսով։

Հնգամյա պլանի վերջին տարում, 1949 թվականի հետ համեմատած, ծանր արդյունաբերության աճը կկազմի 204 տոկոս, իսկ թեթև արդյունաբերության աճը՝ 173 տո-



կոս։ Գյուղատնտեսության արտադրությունը հինգ տարվա ընթացքում կաճի 42,2 տոկոսով։ Հինգ տարվա ընթացքում կառուցվելու է 263 գործարան և ֆաբրիկա, որոնք կունենան ժամանակակից նորագույն տեխնիկա։ Արդյունաբերության համար մեքենաների արտադրությունը հնգամյակի ընթացքում կաճի 17 անգամ, մոտորների արտադրությունը՝ 3,5 անգամ, տրանսպորտի միջոցների արտադրությունը՝ 2 անգամ, գյուղատնտեսական մեքենաներինը՝ 2,5 անգամ։

Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման համար այն մեծ չափերով կմեքենայացվի՝ նոր մեքենատրակտորային կայանների կառուցման միջոցով։ 1954 թվականին երկիրը կունենա 19.500 տրակտոր, որը կապահովի ամբողջ վարելահողերի 60 տոկոսի մշակման մեքենայացումը։

Հնգամյակի վերջում Հունգարիայի ժողովրդի կենսամակարդակը 85 տոկոսով բարձր կլինի նախապատերազմյան մակարդակից։ Հինգ տարում կառուցվելու է 180 հազար բնակարան։ Լայնորեն կզարգանա տարրական, միջնակարգ և բարձրագույն, ինչպես նաև հատուկ մասնագիտական կրթությունը։

1950 թվականի՝ հնգամյա պլանի առաջին տարվա արդյունքները ցույց են տալիս, թե հոնգարական ժողովուրդը ինչպիսի հաջողությամբ կատարում է իր երկիրը դեպի սոցիալիզմ տանող այդ փայլուն պլանը։ Արդեն անցյալ տարի սոցիալիստական սեկտորը տվեց երկրի ազգային եկամտի 73 տոկոսը։ Ֆաբրիկա-գործարանային արդյունաբերությունը մեկ տարում աճեց 34,1 տոկոսով, իսկ ծանր արդյունաբերությունն ավելի քան 36 տոկոսով։ Երկաթուղային բեռնատար և մարդատար վագոնների, ինչպես նաև ավտոմեքենաների արտադրությունը ավելի քան երկու անգամ գերազանցեց 1949 թվականի արտադրությունը։ Նշանակալի չափով ավելացավ թեթև արդյունաբերության արտադրանքը։ Գերակատարվեց նաև արդյունաբերության զարգացման այս տարվա առաջին եռամսյակի պլանը։

—∞—

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել՝*

***Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ.*** — Երիտասարդության մասին։ *309 էջ, գինը 4 ռ. 70 կոպ.։*

**Ֆ. ԳՈՄԻՏՅԱՅԵՎ.**— Համկ(բ)Պ տասնութիներորդ կոնֆերենցիան։ *195 էջ, գինը 1 ռ. 30 կոպ.։*

***Միխ. ՇՈԼՈԽՈՎ.***— Խաղաղ դոնը, *գիրք չորրորդ։ 615 էջ, գինը 14 ռ. 50 կոպ.։*

***ԶԱՎԵՆ ՄԱՐԳԱՐՅԱՆ.***— Ակնարկներ և պատմվածքներ։ *76 էջ, գինը 1ռ. 45 կոպ.։*

**ԱՂԱՎՆԻ.**— Երևանյան էրգեր։ *67 էջ, գինը 1 ռ. 20 կոպ.։*

*Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի հրատարակությամբ լույս է տեսել Գ. ՍՈՒՆԴՈՒԿՅԱՆԻ Երկերի լիակատար ժողովածուի առաջին հատորը։ 590 էջ, գինը 20 ռ.։*

—◆—

Պատասխանատու խմբագիր՝ Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

